սպասնալիք մըն է Լիբիոյ կոնակը»:

Ֆրանսական թերթերը, զայրացած, կը հարցնեն.— Ի՞նչ կ'ուզեն, ի՞նչ է միտքերնին: Հո՞ղ,— չենք տար: Եթէ ուրիշ բան է իրենց նպատակը, սխալ հասցէի դիմած են:

Անգլիոյ մէջ եւս յուզում պատճառած են այս ցոյցերը: Նոյնիսկ պահ մը վրոյց շրջեցաւ թէ Չէմպըլէյն պիտի յետաձգէ իր ճամբորդութիւնը դէպի Հռոմ, եթէ բացատրութիւն չտրուի այս ցոյցերուն մասին:

Գերմանական թերթերը լուռ կը մնան: Ու Փարիզի մամուլը կ'ուզէ իմանալ թէ ի՞նչ կը մտածէ գերմանական կառավարութիւնը,—«լաւ է որ յայտնէ իր կարծիքը, տակաւին Ֆոն Ռիպպընթրոփ Փարիզ չեկած»:

—— oo ——

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԵԼԺ դահլիճէն հրաժարեցաւ ելմտական նախարարը: Վախ յայտնուած ըլլալով որ նախարարական տագնապ պիտի ծագի, Թագաւորը աշխատեցաւ հաշտեցնել տարակարծութիւնները:

ԳՈՐԾԱԶՈՒՐԿՆԵՐՈՒ չաբաթական վերջին վիճակագրութեան համաձայն, 841 գործազուրկներ պակսած են անցեալ շաբթ:

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ կը հեռագրեն թէ ձերբակալուած եւ բանտ նետուած են 11 Ֆրանսացիներ, որոնց մէջ՝ ֆրանսահպատակ Հայ մը, Մուրատեան:

ԼԷՆԻՆԿՐԱՏ հասան 400 մանուկներ, Հանրապետական Սպանիայէն: Սովետական կառավարութիւնը անոնց պիտի տայ «պրոլետարական դաստիարակութիւն»:

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ԿԵԱՆՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

Ամսագրին 9րդ թիւը (նոյեմբեր) ճոխ բովանդակութեամբ: Տասներորդ թիւով կը լրանայ ամսագրին ութերորդ տարեշրջանը: Բացուած է արդէն իններորդ տարուան բաժանորդագրութիւնը՝

Բաժանորդագրութիւն Ֆրանսա 40, եւ արտասահման՝ 50 ֆրանք:

Ցունուար մէկէն սկսեալ խմբագրութիւնը ամէն մէկ բաժանորդի սահմանած է գրքի նուէրներ, որոնց ցանկը պիտի գտնէք Դեկտեմբերի թիւին մէջ:

Ուշադրութիւն «ԿԵԱՆՔ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ»ի նոր հասցէին,

Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ 46, Rue Richer, Paris (9),

որուն պէտք է ուղղել բոլոր թղթակցութիւններն ու դրամական առաքումները: Զիճարող բաժանորդներէն կը խնդրուի փակել իրենց հաշիւները, մինչեւ 31 դեկտեմբեր 1938:








ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ՍԱՓՐԻՉՆԵՐՈՒ Միութեան վարչութիւնը մօտ օրէն դիմում պիտի կատարէ պետական իշխանութեանց, որպէսզի Փարիզի եւ արուարձաններու հայ արհեստակիցները կերծ մնան 1935 Օգոստոս 8ի, օտար արհեստաւորներու (artisan) օրէնքի տրամադրութիւններէն: Կը խնդրուի այն արհեստակիցներէն որոնց ինքնութեան թուղթերը, որպէս արթիզան մերժուած են եւ կամ տարբեր անուամբ տրուած, հաճին շուտով տեղեկացնել իրենց անունն ու հասցէն միութեանս քարտուղար, Պ. Բ. Աճէմեանի, 43 Rue du Surmelin Paris (20):

# Հ. Յ. Դ.

Փարիզ

ԱԼՖՈՐՎԻԼԻ «Ս. Մինասեան» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերները 6 դեկտ., երեքշաբթի երեկոյեան ժամը 9ին սովորական հաւաքատեղին: Օրակարգ՝ նախորդ ժողովին շար.ը:

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

—— oo ——

**ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ ՄԷՋ**

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ «ԱՐԾԻՒ» ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ

4 Դեկտ., կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին

173 Route d'Orleans, Cachan

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. **Լ. ԶՕՐՄԻՍԵԱՆ**

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. **Վ. ԻՇԽԱՆԵԱՆ**

# ՀԱՅ ՌԱԶՄԻԿԻ ՕՐ

ՆՈՒԻՐՈՒԱԾ ԱՆՅԱՅՏ ԶԻՆՈՒՈՐԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ ՀԱՅ ԿԱՄ. ԵՒ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ

10 Դեկտ. 1938, Շաբաթ երեկոյ ժամը 8.30էն մինչեւ առաւօտ

**Salle des Ingenieurs civils, 19 Rue Blanche**

Metro Blanche կամ Trinité

Հովանաւորութեամբ Զօրավար Պրէմօնի եւ նախագահութեամբ Փ. Ֆուրնիէի (նախագահ ֆրանս. ռազմիկներու լիկին):

Ներկայ կ'ըլլան, ու խօսք պիտի առնեն նաեւ Զօրավար Անտրէա (Անթապի ազատարարը), Փօլ տիւ Վէու (Միջերկրականեան կոմիտէին եւ հեղինակ «Կիլիկիոյ խաչելութեան»): Ինչպէս նաեւ բազմաթիւ բարձրաստիճան զինուորականներ:

Գեղարուեստական բաժնին կը մասնակցի Սիփան-Կոմիտաս երգչախումբը: Հայկ. գեղջկական պարեր, ընկերակցութեամբ թառի եւ սրինգի:

Կէս գիշերէն վերջ եւրոպական եւ կովկասեան պարեր:

Ճոխ եւ դիւրամատչելի պիւֆէ Մուտք 8 ֆրանք

## Բժշկական դասախօսութիւն եւ թէյասեղան

Ս. Հ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱՆԿԷՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

4 Դեկտեմբեր, կիրակի ժամը 3.50ին

Անկէնի լճին դէմ. Cascade du Lacի սրահը

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ Պ **Ռ. ԳԻՒԼԽԱՆԴԱՆԵԱՆ**

ԿԸ ԴԱՍԱԽՕՍԷ ՓՐՈՖ. **ԱՂԱՋԱՆԵԱՆ**

Նիւթ՝ «Կամքի հիւանդութիւններ»:

Մուտք 6 ֆր.:

Կառ. տիւ Նօռէն շոգեկառք Անկէնի համար ժամը 3ին, 3.30ին:

## Ցերեկոյթ պարահանդէս

Կազմակերպուած Հաւըրտ Գարակէօզեան Հօմի նախկին Սանուց միութեան կողմէ: 11 Դեկտեմբեր կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ կէս գիշեր, 8 րիւ Պօսիւէ, մէթրօ՝ Փուասօնիէր եւ Կառ տիւ Նօր: Օրքէսթր՝ ճազ-թանկօ:

Մուտք՝ 7 ֆրանք

Ֆ. Կ. ԽԱՉի Փարիզի Մասնաճիւղի աւանդական

## «ՊՏՈՒՂԻ ՕՐ»Ը

24 Դեկտ., Շաբաթ օր, **8 Rue Bossuet**, Փարիզ:

## ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Ֆ. Կ. ԽԱՉԻ ԼԻԼԱ-ՓՐԷ ՍԷՆ ԺԵՐՎԷԻ Մ.ՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

18 Դեկտ., կիրակի ժամը 3 12

**34 Ave. Porte des Lilas**, մէթրօ **Porte des Lilas**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ՏԻԿԻՆ **ԱՐՍԼԱՆԵԱՆ**

Կը ներկայացուի «ԲԱՐԵԿԵՆԴԱՆԻ ԱՆՆՈՒՏԻՆԵՐԸ»,

ղեկավարութեամբ Պ. Հրաչ Տարօնեանի:

«ՀԱՄԲԱԿՈՐ ՎԱՃԱՌԱԿԱՆԸ» ղեկավարութեամբ Պ. Դօքարանի:

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Տիկ. ԼՈՒՍԱՊԱՐՈՆԵԱՆ եւ Օր. ԿՆԵԱԶԵԱՆ (երգ), Պ. Պ. Հ. ՏԱՐՕՆԵԱՆ եւ ՊԱԼԱՊԱՆԵԱՆ (արտասանութիւն):

Ժամը 6ին կը սկսի եւրոպական պարերը: Օրքեսթրը Սալբեանի: Աժան պիւֆէ՝ պատրաստուած անդամուհիներու նուէրներով:

Մուտք 6 ֆրանք:

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ

7 Յունուար, Շաբաթ երեկոյ ԳՕԼԻԶԷի սրահին մէջ:

## "BAL des Mimosas,,

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՍԻՓԱՆ-ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ

25 Դեկտեմբեր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 4էն կէս գիշեր

**Aéro-Club de France**ի ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

















Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme, PARIS (13) A. BER (AGOPIAN)

## ԿԱՐԵՒՈՐ

Փարիզի եւ արուարձաններու բոլոր այն խանութպանները, որոնք Արթիգաճի իրաւունքէն զրկուելու վտանգին տակ են, խորհրդակցական ժողովի կը հրաւիրուին երկուշաբթի երեկոյ ժամը 8·30ին, 8 բիւ Պօսիւէ, Փարիզ (10):

Կարեւոր անձնաւորութիւններ յանձն կ'առնեն իրենց աջակցութիւնը ընծայել, պէտք եղած դիմումները կատարելու պաշտօնական շրջանակներու մօտ:

Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է մեր ձայնը լսելի ընելու համար: Կարգադիր Յանձնախումբ

## ԳՐԱԿԱՆ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆ

### ՇԱՆԹԻ «ԻՆԿԱԾ ԲԵՐԴԻ ԻՇԽԱՆՈՒՀԻ»Ի ՄԱՍԻՆ

Կազմակերպուած Համազգայինի Փարիզի մասնաճիւղին կողմէ, 21 Դեկտեմբեր, Չորեքշաբթի երեկոյ, Քաֆէ Վօլթէրի մէջ, Փլաս Օտէոն, մէթրօ՝ Օտէոն:

ՊԻՏԻ ՍԿՍԻ ՃԻՇԴ ԺԱՄԸ 8.30ԻՆ

Դատական կազմ՝ նախագահ ՏՈՔԹ. Հ. ՋԱՐԴԱՐԵԱՆ, դատաւորներ Հ. Սամուէլ, Յ. Զաւրեան, ընդհ. դատախազ եւ զոհերուն փաստաբան Ա. Խոնդկարեան, Յ. Եղիազարեան,

Մեղադրեալներու փաստաբաններ Լ. Զօրմիսեան, Ս. Թօրոսեան,

Մեղադրեալ Օր. Յ. Պետրոսեան:

Ժիւրիի նախագահ Ս. ՎՐԱՑԵԱՆ, անդամներ, Հայր Սահակ Տէր-Սովսէսեան, Տիկին Ա. Բուդաղեան, Պ. Պ. Ասատուր, Տոքթ. Ասլանեան, Հ. Բալուեան, Տոքթ. Լ. Գրիգորեան, Տոքթ. Վ. Թորգոմեան, Վ. Իշխանեան, Ա. Հանըմեան, Շ. Նարդունի, Մ. Ոսկերիչեան:

Դատավարութենէն վերջ խօսք պիտի տրուի ներկաներուն: Բոլորին նստելու տեղ ապահովուած: Մուտք 3 ֆրանք:

## ԴԱԽՈՒՍՕՍՈՒԹԻՒՆ

ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԱԿՈՒՄԲԻ ԵՒ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ

20 Դեկտ., Երեքշաբթի երեկոյեան ժամը 9ին, 8 Rue Bossuet, Paris:

Կը խօսի՝ Պ. Ա. ՉՕՊԱՆԵԱՆ: Նիւթ՝ Յովհ. Թումանեան:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՆՓ

1 Սեպտեմբերէն 13 Սեպտ. 1938

ՊՕՄՈՆ, Մելիք — 75
ՎԻԼՄՈՆԹԸ, Սիւն — 75
ՍԹՐԱԶՊՈՒՐԿ, Զօպ — 100
ԼԸ ՔՐԷՕԶԷ, Չէթ — 75
ՆԱՆԹ, Գ. Ս — 75
ՓԱՐԻԶ (18), Օր. Պ — 75
ԺՈՒԱՆ ԼԷ ՓԷՆ, Հ. Ղ — 150
ԳԱՎԱՅԵՈՆ, Ման —50
ԱՆԿԷՆ, Սուք. 150
ՄԱՐՍԷՅԼ, Յ. Դաւ. — 300
ԺԸՆԷՎ, Օհ — 150
ՎԻՐՕՖԼԷՅ, Պ. Օհ — 75
ՄՕՐԷՍԹԷԼ, Պար — 40
ԱՎԻՆԵՈՆ, Գործ — 70
ՇԱՎԱՆՈԶ, Ա.Մ — 75
ՇԱՎԱՆՈԶ, Խ. Մ — 55
ՇԱՍ, Պ. Ա — 25
ՍԱԼՈՆ, Աչ — 60
ՍԼԷՍ, Գ. Գ — 40
ԹԱՐԱՐ, Ե. Ս — 150
ՓԻԷՐՖԷՕ, Յ. Վ —50
ՓԻԷՐՖԷՕ, Զար — 175
ՔԱՆ, Սըմ — 35
ՊՕՐՏՕ, Ա. Հ —200
ՊՕՐՏՕ, Դ. Շ — 100
ՍԸՆՕՆ, Հ. Ն — 150
ՊՕՐՏՕ, Գործ — 408

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Պանէծօ - Քաշանի Կ. Խաչի Մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Տիկ. Մառի եւ Օր. Ազգանուէ Ղոնչէկիւլեաններուն եւ իրենց պարագաներուն Տիկին ՀՌԻՓՍԻՄԷ ՄԾԱՏՈՒՐԵԱՆի մահուան առթիւ:

×

Ֆ. Հ. Կ. Խաչի Իթալիի եւ Շրջանի Մասնաճիւղի Վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Ցամիկ Տէր Աւետիսեանի իր հօրաքրոջորդւոյն՝ ԽՈՐԷՆ ՇԻՐԽԱՆԵԱՆի դառնակսկիծ մահուան առթիւ:

## ԾՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ռ. ՄԻՈՒԹԵԱՆ Փարիզի մասնաճիւղին ընդհանուր ժողովը տեղի կ'ունենայ վաղը երկուշաբթի, երեկոյեան ժամը 9ին, «Քառէ» սրճարանին վերնայարկը: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶԷՆ Պ. ԱՍԱՏՈՒՐԵԱՆ 20 Ֆր. կը նուիրէ Փոքր տ'Իթալիի եւ Շըրջանի Ֆ. Կ. Խաչի Մասնաճիւղին:



# «BAL DES MIMOSAS»

## ԱՄԵՆԷՆ ՃՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

«ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ» երգչախումբի կողմէ, 25 Դեկտ., Կիրակի կէսօրէ վերջ ժամը 4էն կէս գիշեր

**AÉRO-CLUB DE FRANCE**ի շքեղ սրահներուն մէջ, **6 Rue Galilée, Métro Boissière**

ԱՐԺԱՆԹԻՆԵԱՆ ՄԵԾ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

Այս մեծ ցերեկոյթին բացառիկ հմայք մը տալու համար, առաջին անգամ գաղափարը յղացուած է զայն նուիրելու Միմօզա քնքոյշ ծաղիկներուն, որոնք պիտի ըլլան օրուան մեծ զարդը:

Դասական պարեր տեղի պիտի ունենան օրիորդներու եւ Ռուս գազագներու պալէի խումբին կողմէ: Խնամուած պիւֆէ, զանազան անակնկալներ:

Սիփան - Կոմիտաս երգչախումբի պարահանդէսներուն զուարթ յիշատակը կը տեւէ ամբողջ տարի մը: ՄՈՒՏՔ 12 ՖՐԱՆՔ

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԲԱՑՈՒՄ

### ԸՆԿ. Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆԻ ՇԻՐԻՄԻՆ

Տեղի կ'ունենայ այսօր, 18 Դեկտ., Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին:

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ Ֆ. Հ. Կ. ԽԱՉԻ ՄԱՐՍԷՅԼԻ Մ.ՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

18 Դեկտ., Կիրակի երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ **COLISÉE**ի շքեղ սրահին մէջ

ԿԸ ԽՕՍԻ Պ. ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին օրիորդներ Պ. ԳԷՈՐԳԵԱՆ, ԳԸՄՊԼԵԱՆ եւ ՄՈՒՇԿԱՆՊԱՐԵԱՆ (երգ). Տէր եւ Տիկին ՏԼՐ ՅԱԿՈԲԵԱՆ (կովկասեան պար), փոքրիկն ՕՏԷԹ ՍԻՄՈՆ (պար):

Եւրոպական պարերը կը սկսին ժամը 9ին:

Ճոխ եւ գինուրամատչելի պիւֆէ:

ՄԱՐՍԷՅԼԻ Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Օր. Արփիկ Միսաքեանէ 100 ֆրանք, Պ. Ներսէսեանէ 200 ֆրանք:

## «ՊՏՈՒՂԻ ՕՐ» ԵՒ ԽՆՋՈՅՔ

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ

24 Դեկտ., Շաբաթ, ժամը 14—24: **8 Rue Bossuet**, Փարիզ:

Քաջալերեցէք Միութեանս բազմապիսի գործունէութիւնը, գնելով մեր մօտ ձեր Կաղանդի պտուղը՝ թարմ ու համեղ:

Հոն կը գտնէք՝ Խաչուհիներու ճոխ ու համեղ պիւֆէն:

Երգ — պար — նուագ: Մուտքը ազատ է

## ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Ֆ. Կ. ԽԱՉԻ ԼԻԼԱ - ՓՐԷ ՍԷՆ ԺԵՐՎԷԻ Մ.ՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

18 Դեկտ., Կիրակի ժամը 3 - 12

**34 Ave. Porte des Lilas**, մէթրօ **Porte des Lilas**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ՏԻԿԻՆ Մ ԻՍԱՔԵԱՆ

Մուտք 6 ֆրանք

## Ներկայացում—պարահանդէս

Փորթ տ'Իթալիի եւ շրջանի Հայ Կ. խաչի մասնաճիւղին կողմէ

18 Դեկտ. Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ կէս գիշեր:

13 րիւ Փիէռ Քիւրի, Քրէմլին Պիսէթր, մէթրօ Փորթ Իթալի:

ԿԸ ԲԱՆԱԽՕՍԷ Պ. Վ. ԲԷՇ...ՆԵԱՆ

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ

7 Յունուար, Շաբաթ երեկոյ ԳՕԼԻԶԷԻ սրահին մէջ:

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ ԼԻՈՆԻ ՄԷՋ

ՕՐ. ...ԺԷԼ ՎԸՐԺՈՂԻՏԵԱՆԻ

Ա. Մրցանակ Մարսէյլի պետական երաժշտանոցէն

(Grand prix Wicart)

7 Յունուար, Շաբաթ ժամը 21ին, Salle Emile Zola

Մուտք՝ 4, 6 եւ 10 ֆրանք:

## ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ

ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԵՐԻՏ. ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ

ԵՐԻՏԱՍԱՐԴ ՀԱՅՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ

18 Դեկտ., Կիրակի կէսօրէ վերջ ժամը 4էն մինչեւ կէս գիշեր

**Hôtel des deux Mondes**ի ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**22 Avenue de l'Opéra**, Մէթրօ **Pyramides**:

Ընտիր օրքեսդր: Գեղարուեստական բաժին: Ճոխ եւ խնամուած պիւֆէ: Մուտք 15 եւ 10 ֆրանք:



Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN) 17, Rue Damesme — PARIS (13)

Տէր եւ Տիկին Ստեփան Տամլամեան, Տէր եւ Տիկին Հ. Աբէլեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Բ. Պալիկեան (Իտալիա), Օր. Հայկուհի Տամլամեան, Պ. Զարեհ Մութաֆեան, Տէր եւ Տիկին Ն. Ջինեան եւ զաւակները (Պոլիս), Տէր եւ Տիկին Բ. Տամլամեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Բժ. Խ. Տամլամեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Յ. Աւշարեան եւ զաւակները (Պուլկարիա), Այրի Տիկին Կիւլլինեա Կ. Տամլամեան եւ զաւակները (Պոլիս), Այրի Տիկին Հայկուհի Ն. Տամլամեան եւ զաւակը (Եգիպտոս), Այրի Տիկին Եսթեր Ս. Տամլամեան (Ռումանիա) եւ զաւակը՝ Յարութիւն, ինչպէս նաեւ Ջինեան, Մենծիկեան, Կեռիկեան, Քիւրքճեան, Անանիկեան, Արսլանեան, Աբէլեան, Պալիկեան, Թիւթիւնճեան, Տէմիրճեան, Քիթապճեան, Տիլսիզեան, Սահակեան, Հայթաեան, Իփլիքճեան, Մուրատեան, Գույումճեան, Պախթիարեան, Ջինարեան, Աշրաֆեան, Մանիշակեան, Հ. Սամուէլեան, եւ Զ. Վարպետեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց սիրելի մօր, մեծ մօր, քրոջ, հօրաքրոջ եւ ազգականին՝

## ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՄԱՐԻԱՄ ՏԱՄԼԱՄԵԱՆԻ

(Ծնեալ Ջինեան)

դառնաղէտ մահը՝ որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր 20ին, 58 տարեկանին :

Յուղարկաւորները կը մեկնին հանգուցեալին բնակարանէն, 4 բիւ Լազար - Քարնօ, Քլամար, Ուրբաթ, 23 Դեկտեմբեր, ժամը 10ին: Մարմինը կ'ամփոփուի Քլամարի գերեզմանատունը՝ ընտանեկան դամբարանին մէջ:

ԾԱՆ.— Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայ իբր այդ նկատել :

Հաղորդ. միջոց.— Փորթ տը վերսայլէն առնել օթոպիւս թիւ 89 եւ իջնել Լա Ֆուրշ :



## Հ. Յ. Դ.

*Փարիզ*

Հ. Յ. Դ. ԵՒՐՈՊԱՅԻ Կ. ԿՈՄԻՏԷՆ Ընդհ. Ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ Շրջանի բոլոր ընկերները 25 Դեկտ., Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Սօսիէթէ Սավանթի **D** սրահին մէջ, 8 **Rue Danton**, Մէթրօ Օտէոն:

ՊԱՆԵԷՕ - ՔԱՇԱՆԻ «Արծիւ» Ենթակոմիտէի Ընդհ. Ժողովը 23 Դեկտեմբեր Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին «Կորիւն» Ակումբին մէջ:

### Ընկերահամախմբական դասախօսութիւն

Անիէռ - Պուաքոլոմպի «Արամ» Ենթակոմիտէի ընկերահամախմբական դասախօսութիւնը 23 Դեկտ., Ուրբաթ երեկոյ ժամը 9ին ընկերվարականներու սրահին մէջ, 149 bis Ավընիւ Արժանթէօյ, Անիէռ:

Կը խօսի՝ Ընկեր Ա. Ս. Ա. Տ. Ո. Ւ. Ր.: Նիւթ՝ Ամերիկահայ գաղութը եւ մեր կազմակերպութիւնը : Մուտքը ազատ է:

*Լիոն*

ԼԻՈՆԻ «Վարանդեան» Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լիոնի բոլոր ընկերները 23 դեկտ., Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին «Զարդարեան» գրադարանը, 181 Քուռ Լաֆայէթ:















Հայ Մշակութային Միութիւն

### Գրական դասախօսութիւն

Նուիրուած Հայ Գրական դէմքերու ուսումնասիրութեան :

Յառաջիկայ դասախօսութիւնը տեղի պիտի ունենայ 22 Դեկտեմբեր, Հինգշաբթի երեկոյ «Շահրիկեան» սրահին մէջ, 5 Ռիւ տը Լ'Էքլիփս: Կը խօսի ԳԱՒՐԻԳԷՆ ՓԻՐԱՆԵԱՆ, Միսաք Մեծարենցի մասին:









ԾԱՆՈՒՑՈՒՄ

ԱՒԱԳ ՏՕՆԵՐՈՒ ՄԱՍԻՆ

Կարգադրուած է որ՝ Աւագ Տօնեռուն առթիւ, Մարսէյլի Հոգեւորական դասը միահամուռ այցելէն շրջանիս եկեղեցիներն ու մատուռները: Ըստ այսմ, հետեւեալ թուականներուն եւ վայրերուն մէջ հանդիսաւորութեամբ պիտի կատարուին տօնախմբութիւնները, որոնց սիրով կը հրաւիրուի ժողովուրդը:

Ա.— Դաւիթ Մարգարէին, Գամպանիը Ֆրէզ— 24 Դեկտ., Շբ. օր:

Բ.— Ս. Ստեփաննոս, Ի Մայր եկեղեցի - Բրատօ— 26 Դեկտ., Բշ. օր:

Գ.— Պօղոս-Պետրոս, Ի Պօմոն— 27 Դեկտ., Գշ. օր:

Դ.— Որդիք Որոտման, Ի Գամբանըը Բիրիէ— 29 Դեկտ., Եշ. օր:











Le Gerant : **H. STEPHAN**

Imprimerie A-DER (AGOPIAN) 17, Rue Damesme — PARIS (13)

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Իսէէ Յ. Կ. Խաչի Մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Օր. Մաննիկ Մեծատուրեանի եւ պարագաներուն իր սիրելի մօր դառնաղէտ մահուան առթիւ:

### ԱՑՑ ԱՆԾԱՆՕԹ ԶԻՆՈՒՈՐԻՆ

Հայ Կամաւորներու եւ Մարտիկներու Միութիւնը հրաւիրուած է Ֆրանսական նախկին ռազմիկներու Լիկիկոզմէ, մասնակցելու՝ Անծանօթ Զինուորին բոցը հրահրելու արարողութեան, որ տեղի պիտի ունենայ յառաջիկայ Շաբաթ օր, Դեկտ. 24ի երեկոյեան, ժամը 6ին:

Հաւաքավայր նշանակուած է metro George V, ուրկէ թափորը պիտի մեկնի դէպի Յաղթական Կամարը, նուագախումբի եւ դրօշակներու առաջնորդութեամբ: Կը հրաւիրենք Փարիզեան շրջանի մեր ընկերներն ու համակիրները ճիշդ ժամուն գտնուիլ նշանակուած հաւաքավայրը:

Կեդր. Վարչութիւն

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկին Հրանտ Սամուէլ 100 ֆրանք կը նուիրեն Յ. Կ. Խաչի Կեդր. Վարչութեան փոխան ծաղկեպսակի, Տիկին ՄԱՐԻԱՄ ՏԱՄԼԱՄԵԱՆի դառնաղէտ մահուան առթիւ:

×

Տէր եւ Տիկին Վ. Գարաեան 60 ֆրանք կը նուիրեն Պէյրութի Հայ Ճեմարանին, փոխան ծաղկեպսակի, Տիկին ՄԱՐԻԱՄ ՏԱՄԼԱՄԵԱՆի դառնաղէտ մահուան առթիւ:

### ՑՈՒՑԱՏԵՍԸ

ՀԱՅ ԿԱՄ. ԵՒ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ Միութեան Մարսէյլի Շրջ. Վարչութիւնը ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ իր բոլոր զինակից ընկերները 24 Դեկտ., Շաբաթ երեկոյեան ժամը 8ին, Ազարեանի սրճարանի ներսի սրահին մէջ, 45 Ռիւ տ'Օպանեը, Սալ տը փանթին կից: Կարեւոր օրակարգ:

















### Հ. Յ. Դ.

Փարիզ

Հ. Յ. Դ. ԵՒՐՈՊԱՅԻ Կ. ԿՈՄԻՏԷՆ Ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ Շրջանի բոլոր ընկերները 25 Դեկտ., Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Սօսիէթէ Սավանթի D սրահին մէջ, 8 Rue Danton, Մեթրօ Օտէօն:

ՊԱՆԵՐՕ - ՔԱՇԱՆԻ «Արծիւ» Ենթակոմիտէի Ընդհ. ժողովը 23 Դեկտեմբեր Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին «Կորիւն» Ակումբին մէջ:

### Ընկերահամակրական դասախօսութիւն

Անիէռ - Պուաքօլոմպի «Արամ» Ենթակոմիտէի ընկերահամակրական դասախօսութիւնը 23 Դեկտ., Ուրբաթ երեկոյ ժամը 9ին ընկերվարականներու սրահին մէջ, 149 bis Ավընիւ Արժանթէօյ, Անիէռ:

Կը խօսի՝ Ընկեր ԱՍԱՏՈՒՐ: Նիւթ՝ Ամերիկահայ գաղութը եւ մեր կազմակերպութիւնը:

Մուտքը ազատ է:

Գաւառ

ԼԻՈՆԻ «Վարանդեան» Շրջ. կոմիտէն Ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լիոնի բոլոր ընկերները 23 դեկտ., Ուրբաթ երեկոյ ժամը 8·30ին «Զարդարեան» գրադարանը, 181 քուռ Լաֆայէթ:

ՑԷՍԻՆԻ կոմիտէի Ընդհ. ընկերական ժողովը 24 դեկտ., Շաբաթ երեկոյ ժամը 5ին:

ՆԷՕՎԻԼ ՍԻՒՐ ՍՈՆԻ «Երկաթ» խումբի Ընդհ. ժողովը 24 Դեկտ., Շաբաթ երեկոյ ժամը 6ին սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Ներկայ կ'ըլլայ «Վարանդեան» կոմիտէի ներկայացուցիչը:







ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ԼԷՄԷՆԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ

1 Յունուար, Կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 2ին: Կը խնդրուի նկատի ունենալ այս թուականը:











Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN) 17, Rue Damesme — PARIS (13)









տուաւ՝ ընդունելով որոշ մեղմացումներ կատարել տուրքերու վըրայ, բայց յօդուած 2ը սկզբունքի հարց է եւ իր կառավարութիւնը չուզեր վայրկեան մը աւելի մնալ իր դիրքին վրայ, եթէ պիտի մերժուի յօդուած 2ը:

Քուէի դրուեցաւ:

Կառավարութիւնը շահեցաւ 284ի դէմ 291 քուէ, — 7 քուէ աւելի: 34 հոգի ձեռնպահ մնացած էին:

Կէսօրէ վերջ երեսփոխաններուն թիւը աւելի եւս շատցած էր: Տալատիէ երկու անգամ վստահութեան հարց դրաւ նորէն, երկրորդ անգամին 265ի դէմ 322 քուէով եւ երկրորդ անգամին 229ի դէմ 366 քուէով ամրացաւ կառավարութեան դիրքը:

Երբ կը քուէարկուէր հարիւրին 2 բացառիկ տուրքը, առաջարկներ եղան, — այսպէս՝ տարեկան տասը հազար ֆրանքէ վար եկամուտներու համար տուրքէ զերծ կացուցանել մինչեւ 6000 ֆրանքը, ուրիշներ պահանջեցին՝ մինչեւ 7000ը, եւ զաւկի վրայ 2000 ֆրանք եւս տուրքէ զերծ կացուցանելու պայմանով:

ՊՈՒՏԱՓԷՇԹԷՆ կը հեռագրեն թէ կառավարութիւնը օրինագիծ մը մշակեց Հրեաներու մասին, — Հրեաները ընտրութեանց պիտի մասնակցին առանձին, հրեայ ընտրելներու ցանկի մը վըրայ կեդրոնացնելով իրենց քուէները: Հրեայ երեսփոխաններուն թիւը պիտի չանցնի հարիւրին 6 համեմատութիւնը, Հրեաները պիտի չկարենան պաշտօնեայ նշանակուիլ հանրային հաստատութեանց: Հրեայ բժիշկներու, փաստաբաններու, դերասաններու եւ օրագրողներու թիւը պիտի չանցնի հարիւրին 6 համեմատութիւնը: Հրեաները չեն կրնար աշխատաւորական ձեռնարկներու տնօրէն դառնալ:

«ԷՕՎՌ» դարձեալ արձագանգ կուտայ լուրի մը զոր անգամ մը հերքեցին Պերլինէն, — իբր թէ Հիթլեր դիտող մը պիտի ղրկէ Հռոմ (Կէօրինկը կամ Ռիպպընթրոփը), ներկայ ըլլալու կամ մօտէն հետեւելու այն խօսակցութեանց, որոնք տեղի պիտի ունենան Մուսոլինիի եւ Չէմպըրլէյնի միջեւ, երբ այս վերջինը Հռոմ այցելէ:

## «BAL DES MIMOSAS»

## ԱՄԵՆԷՆ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

«ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ» երգչախումբի կողմէ, 25 Դեկտ., կիրակի կէսօրէ վերջ ժամը 4էն կէս գիշեր

**AÉRO-CLUB DE FRANCE**ի շքեղ սրահներուն մէջ, **6 Rue Galilée, Métro Boissière**

ԱՐԺԱՆԹԻՆԵԱՆ ՄԵԾ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ

Այս մեծ ցերեկոյթին բացառիկ հմայք մը տալու համար, առաջին անգամ գաղափարը յղացուած է զայն նուիրելու Միմօզա ծաղիկներուն, որոնք պիտի ըլլան օրուան մեծ զարդը:

Դասական պարեր տեղի պիտի ունենան օրիորդներու կողմէ: Ժամը 6ին պիտի պարէ Տիմիթրիէվիչի համբաւաւոր պալէի խումբը որ մեծ գնահատութեան արժանացած է «Ռասբուտին» եւ «Մոսկուայի գիշերները» ֆիլմերուն մէջ: Խնամուած պիւֆէ, զանազան անակնկալներ:

Սիփան - Կոմիտաս երգչախումբի պարահանդէսներուն զուարթ յիշատակը կը տեւէ ամբողջ տարի մը: ՄՈՒՏՔ 12 ՖՐԱՆՔ

## Հ. Յ. Դ.

**Փարիզ**

Հ. Յ. Դ. ԵԻՐՈՊԱՅԻ Կ. ԿՈՄԻՏԷՆ Ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ Շրջանի բոլոր ընկերները 25 Դեկտ., կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Սօսիէթէ Սավանթի D սրահին մէջ, 8 Rue Danton, Մէթրօ Օտէօն:

**Գաւառ**

ՆԷՕՎԻԼ ՍԻՒՐ ՍՈՆԻ «Երկաթ» խումբի Ընդհ. ժողովը 24 Դեկտ., Շաբաթ երեկոյ ժամը 6ին սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Ներկայ կ'ըլլայ «Վարանդեան» կոմիտէի ներկայացուցիչը:





## «ՊՏՈՒՂԻ ՕՐ» ԵՒ ԽՆՋՈՅՔ

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ

24 Դեկտ., Շաբաթ, ժամը 14—24: **8 Rue Bossuet**, Փարիզ:

ԽՆՋՈՅՔԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

Քաջալերեցէք Միութեանս բազմապիսի գործունէութիւնը, գնելով մեր մօտ ձեր Կաղանդի պտուղը՝ թարմ ու համեղ:

Հոն կը գտնէք՝ Խաչուհիներու ճոխ ու համեղ պիւֆէն:

Երգ — պար — նուագ: Մուտքը ազատ է



## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

Նոյեմբեր 1 — Նոյ. 20

ՓԱՐԻԶ (18), Նիկ.— 100
ՓԱՐԻԶ (20), Մ. Գ.— 305:
ՌՕԱՆ, Պօղ.— 100:
ՓԸՐԼԻ, Տիկին Ճ.— 265
ՀԸՍԻՆՔԻՆ, Մ. Թ.— 215
ՓԱՎԻՅԵՈՆ Սու ՊՈՒԱ, Ա. Գ.— 40
ՓԱՎԻՅԵՈՆ Սու ՊՈՒԱ, Գ. Գ.— 40
ՆԷՕՎԻԼ, Գրիգ.— 75:
ԱՌՆՈՒՎԻԼ, Գ. Տ.— 120:
ԼԻՈՆ, Ջան.— 75
ԼԻՈՆ, Ց. Թ.— 190
ԱՆԻԷՌ, Հ. Կոթ.— 140
ՔԼԻՇԻ, Գալ.— 40:
ՔՈԼՈՆՊ, Օ. Եր.— 150
ՇԱՎԻԼ, Ս. Ս.— 35
ԼԻՈՆ, Թ. Ա.— 75
ՆՈՒՐԻԿ, Ա. Թոր.— 150
ԱՆՎԵՐՍ, Ն. Զ.— 215
ՄՈՆՓԵԼԻԷ, Ա. Տէր. Վ.— 160
ԼԻՎՐԻ ԿԱՐԿԱՆ, Հար.— 50
ՓԱՐԻԶ (16), Տիկին Գ. — 82
ԹՈՒԼՈՆ, Ա. Ա.— 40
ԿՐԸՆՈՊԼԸ, Գ. Ք.— 225
ՖԱՅԱՆՍ, Սօլ.— 40
ՄՈՆՖԱՎԷ, Գաբ.— 75
ՄԱՐՍԷՅԼ, Հ. Պաս.— 150
ՓԱՐԻԶ (16), Կ. Օ.— 75
ՌԸՆԱԺ, Պ. Տէր Մ.— 75
ԼԻՈՆ, Ֆր.— 75
ԱՐՔԷՕՅ, Օ. Թ.— 190
ՊՈԼԷՆ, Ց. Մ.— 40
ԱՆԻԷՌ, Ա. Ա.— 80
ՖՈՆԹԷՆՊԼԷՕ, Գար.— 40
ԼԻՊՕ, Վ. Թ.— 40
ՏՐԱԿԻՆԵԱՆ, Գ. Լ.— 75
ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊ, Գ. Ց.— 75
ՔԱՆ, Ծ. Վ.— 150

## Պտուղի օր եւ տօնածառ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ Ֆ. Կ. ԽԱՉԻ ԿՐԸՆՈՊԼԻ Մ. ՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

25 Դեկտ., Կիրակի ժամը 2ին Route St. Martin d'Hères, Café Blancի կից սրահին մէջ:

Արտասանութիւն, երգ եւ հայկական պար փոքրիկներու կողմէ:

Ծախքերու մասնակցութեան համար 2 ֆրանք:

## ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Ֆ. Կ. ԽԱՉԻ ԻՍԻԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

24 Դեկտ., Շաբաթ երեկոյ ժամը 9ին, 3 Ռիւ տ'Իսի, Պիյանքուր:

Կը ներկայացուի ԱՐՑՈՒՆՔԻ ՀՈՎԻՏԸ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցի Շավիլի «Րաֆֆի» երգչախումբը ղեկավարութեամբ Պ. ՍԱՀԱԿ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆԻ:

Կէս գիշերէն վերջ եւրոպական պարեր: Կը նուագէ «Եփրատ» նուագախումբը ղեկավարութեամբ Պ. ՕՆՈՍԵԱՆԻ:

Ճոխ եւ աժան պիւֆէ պատրաստուած անդամուհիներու կողմէ:

## [illegible]

ՀԱՅ ԿԻՆ ԵՒ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ Միութեան Մարսէյլի Երջ. վարչութիւնը [illegible] ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները 24 [illegible] ժամը [illegible] [illegible] սրահին մէջ. 45 Ռիւ [illegible] Այլ տեղ փոխելին կից [illegible] օրակարգ:

Մարսէյլի Բարձր Հայրի Հայրենակց. Միութեան բոլոր անդամներ [illegible] Ընդհ. ժողովի կը հրաւիրուին յատուկ կայ Երկուշաբթի 26 Դեկտ., կէսօրէ վերջ ժամը 2ին 6 Rue Petites Maries, [illegible] վերնայարկը: [illegible] [illegible] անդամներուն ներկայութիւնը [illegible] է:

## «Մանուկներու Օր»

Ֆր. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղին կողմէ

31 Դեկտեմբեր, Շաբաթ իրիկուն ժամը ճիշդ 8.30ին

Գ. Թաղապետարանի սրահին մէջ

Կը նախագահէ Պ. Կ. ՏԱՅԵԱՆ

Մանուկներու կողմէ արտասանութիւններ, խմբերգ, «Ծաղիկներու պարը» հայկական պար՝ տոհմիկ տարազներով:

Կաղանդ պապան բոլոր փոքրիկներուն պիտի բաժնէ միրգեր եւ պտուղ:

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը: Մուտք 0.95 սանթ.











## AGENCES: ԳՈՐԾԱԿԱԼՆԵՐ

LYON: M. Francis COTTON, 68 Avenue Galline;
ԼԻՈՆ à Villeurbanne, près Lyon.
Téléph. Lalande 64-10.

MARSEILLE, M. SIMONDI, 17 Allées des Primevères,
ՄԱՐՍԷՅԼ à Marseille.

թիւնը կրնայ չեզոքել նկատել զայն որ եւ է առեն, լուր տալով ե-րեք ամիս առաջ: Այդ պարագային, կրնայ վտարել Իտալացինե-րը, իբրեւ անբաղձալի :

Անշուշտ Ֆրանսական կառավարութիւնը երբեք տրամադիր չէ այդքան արմատական տնօրինութեան մը դիմելու, բայց կրնայ 1896ի պայմանագիրը գործածել իբրեւ Դամոկլէսի սուր, ճնշելու համար Մուսոլինիի վրայ :

Իտալական մամուլն ալ իր կարգին կը մեղադրէ Ֆրանսան, արդար գտնելով 1935ի համաձայնութեան խզումը : Այս առթիւ կը զանգատի թէ Ֆրանսա ոչ միայն ուժ չտուաւ Իտալիոյ, եթով-պական հարցին մէջ, այլ եւ պատժական տնօրինութիւններ կա-տարեց, համաձայն Ազգերու Դաշնակցութեան որոշման:

*** Փարիզի արմատական օրկանին քաղաքական աշխա-տակիցը, Տիկին ժընըվիէվ Թապուի, կը կարծէ թէ Մուսոլինի չնդգալից պահանջներ պիտի ներկայացնէ Ափրիկէի մասին եւ պի-տի պահանջէ գոհացում տալ յունուար - փետրուարի ընթացքին : Այս առթիւ կը բացատրէ թէ Գերմանիան է որ աճապարելու կը մղէ Իտալիան, որովհետեւ յառաջիկայ գարնան ալ ինք Իտալիոյ աջակցութեան պիտի դիմէ, ուրիշ պահանջներ արժեցնելու հա-մար: Իբրեւ թէ Հիթլէր համաձայնած է որ նախ Իտալիոյ պա-հանջները մէջտեղ դրուին, բայց չուզեր ժամանակ վատնել, որով-հետեւ անգլիական դիւանագիտութիւնը յարատեւ գործունէու-թիւն կը ցուցնէ Գերմանիոյ դէմ, Եւրոպայի արեւելեան, հարաւ-արեւելեան եւ հիւսիսային արեւելեան շրջաններուն մէջ: Միւս կողմէ, Ամերիկա յայտնապէս հակագերման դիրք մը բռնած է, ինչ որ կրնայ վնասել Գերմանիոյ շահերուն :

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԳԵՐՄԱՆ ՍՊԱՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ հրամանով 1906ին եւ 1907ին ծնած բոլոր Գերմանները պէտք է արձանագրուին յունուար 16էն փետրուար 28, բժշկական քննութեան ենթարկուելու եւ զինուո-րական մարզանքի շրջան մը անցընելու համար: Այս կերպով զին-ուորական կարճատեւ մարզանք մը պիտի ստանան 1901էն 1914 ծնած բոլոր Գերմանները :

ՍՊԱՆԻՈՅ մէջ երեւան հանուած դաւադրութեան հետեւան-քով, ձերբակալուած են աւելի քան հազար հոգի, ազգայնական իշխանութեան կողմէ: Իրազեկ աղբիւրէ կը հաւաստեն թէ հարիւ-րաւորներ գնդակահարուած են արդէն: Ինչպէս կը յիշուի, դաւը ուղղուած էր Զօր. Ֆրանքոյի դէմ, կարճ կապելու համար պա-տերազմը :

ՄՈՍԿՈՒԱՅԷՆ կը հեռագրեն թէ Թաշքենդի մէջ ձերբակալ-ուած են Խիվայի նախկին խաներուն կիները, Շիւքիւրճան եւ Ու-լուքճան, ինչպէս եւ անոնց որդիները: Ասոնց վրայ գտնուած են քանի մը միլիոն րուբլի արժողութեամբ արծաթ եւ գոհարեղէններ որոնք պետական սեփականութիւն կը համարուին: Խիվայի խա-նութիւնը (Ուզպէկիստան) հարկատու էր պետութեան եւ տեւեց մինչեւ 1920, երբ խորհրդային իշխանութիւնը խորտակեց զայն եւ խաները արտաքսման փախան :

ՊԷՅՐՈՒԹԷՆ հասած հեռագիր մը կը հերքէ այն լուրերը թէ խռովութիւններ ծագած են Ճէպէլը Տրիւզի մէջ: Տիւրզիները պարզապէս վարչական ազատութեան ընդլայնում կը պահանջեն Դամասկոսի կառավարութենէն եւ անցեալ կիրակի մերժած են ճանչնալ Եղեռնագէտ Ատեանին դատաւորներուն իրաւասու-թիւնը:

ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ԱՌԹԻՒ, անուշեղէնի եւ նպարեղէնի խա-նութները բաց պիտի մնան Դեկտ. 25ին եւ 26ին, յունուար 1ին եւ 2ին: Իսկ սեղանատնային հաստատութիւնները պիտի փակուին Դեկտեմբեր 26ին եւ յունուար 2ին:

ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ արտակարգ համա-գումարը բացուեցաւ երէկ, շաբաթ, Մոնռուժի մէջ, քննելու հա-մար արտաքին քաղաքականութեան վերաբերեալ խնդիրներ: Տա-կաւին համաձայնութիւն գոյացած չէ երկու գլխաւոր բանաձեւե-րու միջեւ,— Փօլ Ֆոռի տեսակէտը, որ կը տրամադրէ չարունա-կել խաղաղասիրական քաղաքականութիւնը, Լէոն Պլումի տեսա-կէտը, որ հակառակ է Միւնիխի քաղաքականութեան :

ԵՐԿՈՒ ՍՊԱՌԱՋԷՆ ԱՒԱԶԱԿՆԵՐ Օպէրվիլիէի մէջ կեցնելով դրամատան մը երկու հաւաքիչները, յաջողեցան թռցնել անոնց փոխադրած գումարը, 1,098,000 ֆրանք: Աւազակները յաջողե-ցան փախչիլ :





## Հ. Յ. Դ.

Փ.... 

Հ. Յ. Դ. ԵՒՐՈՊԱՅԻ Կ. ԿՈՄԻՏԷՆ Ընդհ. Ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ Շրջանի բոլոր ընկերները 25 Դեկտ., կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Սօսիէթէ Սավանթի D սրահին մէջ, 8 Rue Danton, Մէթ-րօ Օտէոն:



### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Պոլ. Օտտոյի «Վռամեան» Ենթա-կոմիտէն իր խորին ցաւակցութիւն-ները կը յայտնէ ընկերուհի Գ. Շահ-լամեանի, իր աղջկան եւ պարագանե-րուն ընկեր ԳԱՐԵԳԻՆ ՇԱՀԼԱՄԵԱՆԻ ղառնակսկիծ մահուան առթիւ:

×

Ի դիմաց Պոմոնի, Սէն-Ժիւլիէնի, Լա Բօզիէի, Ֆոնտագլի, Սէն-Պանտա-լէի, Պուա Լիւզիի եւ Մարթիկոյի Հայ հասարակութեան մեր խորին ցա-ւակցութիւնը կը յայտնենք Ս. Գրի-գոր Լուսաւորիչ եկեղեցւոյ հիմնա-դիր եւ մեր շրջանի Գաւառական Ժո-ղովի անդամ Պ. ԳԱՐԵԳԻՆ ՇԱՀԼԱՄ-ԵԱՆԻ ղառնաղէտ մահուան առթիւ՝ իր ընտանեկան պարագաներուն:

Պոմոնի եւ շրջակայից Թաղական խորհուրդ

×

Մարսէյլի Ամասիոյ եւ Մարզուանի Հայրենակցական Միութեան Վարչու-թիւնը իր ցաւակցութիւնները կը յայտնէ հայրենակից եւ Միութեան պատուոյ նախագահ Գերաշնորհ ԵՐՈՒԱՆԴ ԵՊԻՍԿ. ՓԷՐՏԱՀՃԵԱՆԻ մահուան առթիւ, իր պարագաներուն: առթիւ:

×

Ֆ. Հ. Կապոյտ Խաչի Պոլ. Օտտո-յի Մասնաճիւղը իր խորին ցաւակցու-թիւնը կը յայտնէ ընկերուհի Շահ-լամեանի եւ Օր. Հ. Շահլամեանի եւ իրենց պարագաներուն իրենց սիրելի ամուսնոյն եւ հօր՝ Պ. ԳԱՐԵԳԻՆ ՇԱՀԼԱՄԵԱՆԻ ղառնակսկիծ մահ-ուան առթիւ:

Փոքրիկն Հուրի Քէշիշեան 20 ֆր. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Կեդր. Վար-չութեան:

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկին Սեռովբէ Պահթիար-եան եւ Տէր եւ Տիկին Միհրան Պահ-թիարեան 50ական ֆրանք կը նուի-րեն Փարիզի Ազքատախնամին փո-խան ծաղկեպսակի Տիկին ՄԱՐԻԱՄ ՏԱՄԼԱՄԵԱՆԻ ղառնաղէտ մահուան

### ՄՈՒՇԱՏԻՏՐ

Մարսէյլի Բարձր Հայքի Հայ-րենակց. Միութեան բոլոր անդամ-ները անխտիր Ընդհ. Ժողովի կը հրաւիրուին յառաջիկայ Երկուշաբ-թի. 26 Դեկտ., կէսօրէ վերջ ժամը 2ին 6 Rue Petites Maries, սրճարանին վերնայարկը: Իրաւա-սու անդամներուն ներկայութիւնը ստիպողական է:

Ֆ. Կ. ԽԱՉԻ Պանեէօ - Քաշանի Մասնաճիւղը կը յայտարարէ առ ի գիտութիւն՝ որ սկսած է իր սան-սա-նուհիներու կիրակնօրեայ դասըն-թացքները, 52 Rue Gustave-Courbet, Bagneux: Արձանագրութեան համար դիմել տեղւոյն վրայ, կիրակի առա-ւօտները ժամը 9—12:




Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN) 17, Rue Damesme — PARIS (13)



ԱՄԵՆԱԸՆՏԻՐ ՊՈՒԼԿԱՐԱԿԱՆ ՔԱՇՔԱՎԱԼ ՔԻԼՕՆ 22 ՖՐԱՆՔ

ՊԱՐՍԿԱԿԱՆ ՍԱՏՐԻ ԲՐԻՆՁ, ԷՔՄԷՔ ՔԱՏԱՅԻՖ, ԼԻՔՕՐԻՆՈՍ, ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՄԲԱՒԱՒՈՐ ԾԻՐԱՆ ԵՒ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԱՌԱՋՆԱ ԿԱՐԳ ՉՈՐ ՄՐԳԵՂԷՆՆԵՐ ՆՈՐ ՏԱՐԻԻ ԵՒ ԾՆՈՒՆԴԻ ԴՆՈՒՄՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ ԴԻՄԵՑԷՔ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՒ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՆՊԱՐԵՂԷՆՆԵՐՈՒ ՃՈԽ ՄԹԵՐՔՈՎ Հ ԱՆՐԱԾԱՆՕԹ

"ARARAT" ՄԵԾ ՆՊԱՐԱՎԱՃԱՌԱՏՈՒՆԸ

**39, Rue de Trévise, Metro: Cadet, Tél. Prov. 05-91**

**Livraison rapide à domicile**

---

ՆՈՐ ՏԱՐԻԻ ԵՒ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ ՍՏԱՑԱԾ ԵՆՔ ԱՄԵՐԻԿԵԱՆ, ՊԱՐՍԿԱԿԱՆ, ԻՏԱԼԱԿԱՆ, ՍՈՒՐԻԱԿԱՆ ԵՒ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԱՄԵՆԱԸՆՏԻՐ ՉՈՐ ՄՐԳԵՂԷՆՆԵՐ, ԻՆՉՊԷՍ ՆԱԵՒ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՒ ԵՒՐՈՊԱԿԱՆ ԱՌԱՋՆԱԿԱՐԳ ՆՊԱՐԵՂԷՆՆԵՐ ։

# Maison HERATCHIAN

ՆՊԱՐԵՂԷՆԻ ԱՄԵՆԱՀԱՐՈՒՍՏ ՏՈՒՆԸ

**6 Rue Lamartine (Petit Journal**ի *ետեւի փողոցը***)** *Փարիզ*

*մէթրօ* **Cadet,** *կամ* **Notre Dame de Lorette, Tél. Trud. 43-19**

ԿԱՂԱՆԴԻ ԵՒ ԼՈՒ ՀԱՄԱՐ ԻՐ ՅԱՐԳԵԼԻ ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐԸ, ՆԵՐԿԱՅ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԱԳՆԱՊԻ ՄԻՋՈՑԻՆ, ԻՐ ԱՊՍՊՐԱՆՔՆԵՐԸ ԿԸ ԾԱԽԷ ԱՆՄՐՑԵԼԻ ԳԻՆԵՐՈՎ։ ՀԱՄԱՋԱՅՆ ԱՄԷՆ ԴՆՈՒՄԻ ՔԱՆԱԿԻՆ՝ ՊԻՏԻ ՏՐՈՒԻ ՆՈՒԷՐ ՄԸ ։

ԴԻՄԵՑԷՔ ՀԱՄՈԶՈՒԵԼՈՒ ՀԱՄԱՐ։ ՓՈՔՐԱՔԱՆԱԿ ՎԱՃԱՌՈՒՄ՝ ՄԵԾԱՔԱՆԱԿԻ ԱՐԺԷՔՈՎ ։

ՆՈՐ ՏԱՐԻԻ ԱՌԹԻՒ, ԽԱՆՈՒԹԸ ԲԱՑ Է ԲԱՑԱՌԱԲԱՐ, ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ՄԻՆՉԵՒ ԿԷՍՕՐ։

**Livraison rapide à domicile**

---



Médaille d'Or 1930

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ, ՉՈՐ ՄՐԳԵՂԷՆՆԵՐՈՒ ՄԻԱԿ ԿԵԴՐՈՆԱՏԵՂԻՆ

Այցելեցէք անգամ մը մեր Նպարեղէնի վաճառատունը որ կը ցնծայ տօնական օրերու յատուկ իր ճոխ միրգերով (ուղղակի ներածուած) եւ ախորժաբեր ըմպելիներով։ *Դօզինաքի եւ անուշապուրի յատուկ ամէն տեսակ նիւթեր*։ Խմիչքը անոնց **ՇԻՐԱԿ** արեւելեան սուրճի կախարդիչ բոյրը պիտի առաջնորդէ ձեզի դէպի մեր վաղեմի քաղցր երազները։ Բացառիկ զեղչ, հայ գիներ միայն եւ միայն տօներու առթիւ։ Livraison à domicile։



Diplôme d'Honneur 1931

**ՇԻՐԱԿ ՆՊԱՐԱՎԱՃԱՌԱՏՈՒՆ** 26, Rue de Trévise, Paris, Metro Cadet. Tel. Prov. 38-63

---

## ՕԳՏՈՒԵՑԷՔ

ՆՈՐ ՏԱՐԻԻ ԵՒ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ ՓՈՔՐ ՇԻՇ ՄԸ ՕՂԻ ԿԱՄ ԼԻՔԷՕՌ ԿԸ ՏՐՈՒԻ 100 ՖՐԱՆՔ ԴՆՈՒՄ ԸՆՈՂՆԵՐՈՒՆ ։

ԸՆՏԻՐ ՄՐԳԵՂԷՆՆԵՐ, ԱՐԵՒԵԼԵԱՆ ԽԻՍԿԱԿԱՆ ՃԻՊՐԱ ԵՒ ՍԵԼԱՆԻԿ ՕՂԻ, ԱՆՈՒՇԵՂԷՆՆԵՐ ԵՒ ԱՄԷՆ ՏԵՍԱԿ ՆՊԱՐԵՂԷՆՆԵՐ։

# Alimentation Constantinople, 37 Rue de Trévise, Paris (9)

**Metro: Cadet, Tél. Pro. 82-96**

**Livraison à domicile**

---

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ՀԱՄԱՅՆԱՎԱՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆԸ պաշտօնապէս լուծուեցաւ Չեխոսլովաքիոյ մէջ։ Կառավարութիւնը պիտի գրաւէ բոլոր գոյքերը ։*

*ՃԷՊԷԼԸ ՏՐԻՒԶԻ երեւելիները ցոյց մը կազմակերպելով, ինքնավարութիւն պահանջեցին։ Այս առթիւ հանրագրութիւն մը ստորագրուեցաւ, որ հաւատարմութիւն կը խոստանայ Ֆրանսայի ։*

*ՌՈՒՍԵՐԸ բազմաթիւ զինուորներ կը համախմբեն Ծայր. Արեւելքի ճակատին վրայ, հակառակ Ճափոնի հետ կատարուած բանակցութեանց։ Նաւային ուժերն ալ աւելցած են։*

*17 ԱՄՍՈՒԱՆ ԿՌԻՒՆԵՐՈՒ ընթացքին, Չինացիները ունեցած են 823,000 մեռեալ, Ճափոնցիները՝ 47,133, համաձայն ճափոնական տեղեկագրի մը։ Չինական բանակին ընդհ. կորուստը կը հաշուեն երկու միլիոն։ Ճափոնցիները գրաւած են Չինաստանի տարածութեան 47 առ հարիւրը։*

---

## «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»Ը

**Ֆ. Կ. ԽԱՉԻ ԼԻՈՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ**

31 *Դեկտ., Շաբաթ երեկոյ ժամը* 8.30*ին*

*Գ. Թաղապետարանի սրահին մէջ*

*Կը խնդրուի չյապաղել։ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։*

---

## ԵՂԱՆԱԿԻ ՓԱՅԼՈՒՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

7 *Յունուար Շաբաթ երեկոյ ժամը* 8.30*էն մինչեւ լոյս*

ՍԱԼՈՆ ԳՕԼԻՋԷԻ ՄԷՋ

*Գեղարուեստական բաժին։ Պարահանդէսին պիտի նուագէ նրշանաւոր* **Jazz Paladium de Londres.**

---

## ՀԱԳՈՒՍՏԵՂԷՆԻ ԵՒ ՈՒՏԵՍՏԵՂԷՆԻ ԿԱՊՈՑՆԵՐ ՌՈՒՍԻԱՍՏԱՆ ՂՐԿԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*Ունինք մեծ մթերք ֆրանսական, անգլիական եւ չեխոսլովաք կերպասներու։ Փափաքողները կրնան ղրկել իրենց գնած ապրանքները։ Ունտէրվուտ եւ Ռոյալ գրի մեքենաներ։ Կը գնենք ու կը ծախենք օտար դրամներ։ Կը ստանձնենք ապրանքներու* embal-lago *եւ ապահովագրութիւն։ Փոխադրութիւն ամէն տեսակ ապրանքներու եւ պակածներու։*

*Դիմել՝* **American Lloyd, Paris (9). 7 rue Auber**

**Tél. Opéra 67-77**

---

# ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՏԱՐԱԳԸ

6 ԵՒ 8 ՅԱՅՆՈՎ

29 ԴԵԿՏ. ՀԻՆԳՇԱԲԹԻ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 9ԻՆ **Salle Gaveau**ի ՄԷՋ. **45, Rue de la Boëtie**

*Կ'երգէ ռուսական Մայր Եկեղեցւոյ հռչակաւոր երգչախումբը մասնակցութեամբ հայ երգիչներու* ացիկնւ՝ ՕՐ. ԱՐՈՒՍԵԱԿ ԱԼՊԱՆ

Առաջնորդութեամբ հեղինակին՝ Պ. ՕՆՆԻԿ Ռ. ՊԷՐՊԷՐԵԱՆԻ

*Երգահանդէսին կը մասնակցին* **Mme. Pauline Aubert** *եւ* ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆ

---

*Հրապարակային բանախօսութիւն Ալֆորվիլի մէջ*

*Հ. Յ. Դ. «Ս. Մինասեան» Ենթակոմիտէն կազմակերպած է հրապարակային բանախօսութիւն, 30 Դեկտ., Ուրբաթ երեկոյեան ժամը* 8.50 *ին իր Ակումբին մէջ։*

**ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. Վ. ԻՇԽԱՆԵԱՆ**

*Նիւթ՝* Ներկայ քաղաքական կացութիւնը

---

*Ուշադրութիւն նոր հասցէին*

**Յ. ԱՐԹԻՆԵԱՆ**

**68 Rue Julien-Lacroix, Paris (20)**

Metro Belleville — Tél. Ménil. 67—70

Ստացած ենք հայերէն եւ Թուրքերէն նոր տիսքեր, երգուած նշանաւոր երգիչներէ, հին եւ նոր եղանակներով։ Ունինք նաեւ ֆրանսական ապուխտ, երշիկ եւ ամէն տեսակ արեւելեան նպարեղէններ։ *Բաց է ամէն օր։*

---

ԲԱՑՈՒԱԾ Է

ՀԱՅԿԱԿԱՆ ՃԱՇԱՐԱՆ

## ՀՐԱՅՐ ՍԱՍՈՒՆԻ

**3, Rue Latran,** մէթրօ **Maubert**

Արեւելեան եւ եւրոպական համեղ կերակուրներ ։

Ամէն օր ընտիր շաշլիկ

ժամադրուեցէք **Réveillon**ի համար, **31** Դեկտ. Շաբաթ գիշեր

*Հայկական նուագ եւ պարուհիներ*

---




## "ՇԻՐԱԿ"

Արեւելքի միակ իսկական օղին է։

Անզուգական, Անմրցելի, Անփոխարինելի։

Առաջնակարգ զօրացուցիչ ախորժաբեր, պատրաստուած զուտ չամիչի հիւթով։ Հայ աւանդական սեղանին զարդ։

---




## ՐԱՔԸ ՏԻՒԶ

Զուտ խաղողէ քաշուած եւ անփոխարինելի պատրաստուած հայկական օղին է ՐԱՔԸ ՏԻՒԶը, ջղուշացէք արուեստական օղիներէ որ ձեր ստամոքսը կ'այրէ եւ գլխացաւ կու տայ ու կը վնասէ ձեր առողջութեան։ Խմեցէք միայն ՐԱՔԸ ՏԻՒԶը որուն անաւարտ, կազդուրիչ եւ ախորժաբեր հատկութիւնները ընդունուած է։

Dalakupeian 8 Rue Suffren
Dépôt: 7 Rue de la Paix, Marseille. Tél. Dragon 70-89.

---

Le Gerant : H. STEPHAN
17, Rue Damesme — PARIS (13)
Imprimerie A-DER (AGOPIAN)

Հրապարակային խանդավառութիւն Ալֆորվիլի մէջ

Հ. Յ. Դ. «Ա. Մինասեան» ենթակոմիտէն կազմակերպած է հրապարակային բանախօսութիւն. 30 Դեկտ., Ուրբաթ երեկոյեան ժամը 8.50 ին իր Ակումբին մէջ։

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. Վ. ԽՇԽՇԵԱՆ

Նիւթ՝ Ներկայ քաղաքական կացութիւնը

ՂԱՐԱԲԱՂ - ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆԸ ՍԱՐՔԱԾ Է ՀԻՆԳՇԱԲԹԻ, ՅՈՒՆՈՒԱՐ 5ԻՆ, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 7ին

ԹԱԹԱԽՄԱՆ ԵՒ ԿԱՂԱՆԴԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՍԵՂԱՆ

Այս առթիւ կը հրաւիրէ բոլոր փափաքողները որ կանուխէն արձանագրուին, դիմելով Տիկին Ա. ԲՈՒԴԱՂԵԱՆԻ, 39 Rue le Marois, Tél. Aut. 30-44,Ն. Պ. ՊԱՐՈՆԵԱՆԻ կամ ՏԻԳ. ԲԷԳՁԱԴԵԱՆԻ, 37 Rue Bassano, Tél. Bal. 22—72։

ԸՆԹՐԻՔԻ ՀԱՄԱՐ ՊԷՏՔ Է ՎՃԱՐԵԼ 20 ՖՐԱՆՔ

Մասնաւորապէս փափաքելի է հայ արուեստագէտներու, գրագէտներու, մտաւորականներու եւ հանրային գործիչներու համախմբումը ուրախ ժամանցի համար։ Կը խնդրուի արձանագրուիլ ամէնէն ուշ մինչեւ Յունուար 2ը։

ՀԱՒԱՔԱՎԱՅՐԸ ՊԻՏԻ ԾԱՆՈՒՑՈՒԻ ԱՌԱՆՁԻՆ

«ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»Ը

Ֆ. Կ. ԽԱՉԻ ԼԻՈՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

31 Դեկտ., Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին

Գ. Թաղապետարանի սրահին մէջ

Կը խնդրուի չխաչաձեւել։ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ ԱՆԻԷՌ - ՊՈՒԱՔՈԼՈՆՊԻ ՀԱՅԵՐԷՆ ԴԱՍԸՆԹԱՑՔՆԵՐՈՒ ԿՐԹԱԿԱՆ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

1 Յունուար, Կիրակի երեկոյ ժամը 8.30ին ընկերվարականներու սրահին մէջ, 149 Bis, Avenue d'Argenteuil, Անիէռ։

Երգ, արտասանութիւն, պար եւ զանազան դպրոցական խաղեր։

Մուտք՝ 5 եւ 3 ֆրանք

ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ՕՓԵՐԱՅԻ ԵՐԳՉՈՒՀԻ ՏԻԿԻՆ ԹԷՐՁԻՊԱՇԵԱՆԻ

ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Տեղի պիտի ունենայ 1 Յունուար, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30ին

**Salon MASSILIA**ի մէջ. **1 Rue Roux de Brignolle,** Մարսէյլ։

Ուշադրութիւն նոր համերգի

Յ. ԱՐԹԻՆԵԱՆ

**68 Rue Julien-Lacroix, Paris (20)**

Metro Belleville — Tél. Ménil. 67—70

Ստացած ենք հայերէն եւ Թուրքերէն նոր տիսքեր. երգուած նշանաւոր երգիչներէ, հին եւ նոր եղանակներով։ Ունինք նաեւ հայկական ալուխտ, երգիկ եւ ամէն տեսակ արեւելեան նուարեղէններ։

Բաց է ամէն օր։


Le Gerant : H. STEPHAN

17, Rue Damesme — PARIS (13) — Imprimerie A-DER (AGOPIAN)


Հ. ՔԱՐԴԱՐԵԱՆ

ՎԻՐԱԲՈՅԺ - ԱՏԱՄՆԱԲՈՅԺ

**14 Rue Dunkerque** (ՄԷԹՐՕ ԿԱՐ ՏԻՒ ՆՈՌ)

**Tél. Trudaine 42—69**

Կ'ընդունի ամէն օր ժամը 14—20։

Ձաւատներ ժամադրութեամբ։

ՀԱՅԵՐՈՒ ԺԱՄԱԴՐԱՎԱՅՐԸ

Ճաշարան ՖԼՈՐԻԱ

61, Rue Monsieur le Prince, Paris (6e)

Մէթրօ՝ Օտէօն եւ Սէն Միշէլ

Արեւելեան եւ եւրոպական խնամուած կերակուրներ :

ԲԱՑՈՒԱԾ Է

ՀԱՅԿԱԿԱՆ ՃԱՇԱՐԱՆ

ՀՐԱՅՐ ՍԱՍՈՒՆԻ

3, Rue Latran, մէթրօ Maubert

Արեւելեան եւ եւրոպական համեղ կերակուրներ։

Ամէն օր ընտիր շաշլիկ

Ժամադրուեցէք Réveillonի համար, 31 Դեկտ. Շաբաթ գիշեր

Հայկական նուագ եւ պարուհիներ



**Alimentation „TRÉVISE"**

Իր անմահական **«Moka»** սուրճովը

**Café "HAREM„**

Ամենաընտիր ապրանքներ, փաստօրէն անմրցելի գիներով։

ՄԵԾԱՔԱՆԱԿ ԵՒ ՓՈՔՐԱՔԱՆԱԿ

Ճերմակ պանիր 16 ֆրանք, քաշէր 22—24, օճառ (72%) քիլօն 4.30, բրինձ՝ փիլաւի համար 4 ֆրանք։

5 ԱՌ ՀԱՐԻՒՐ ԲԱՑԱՌԻԿ ԶԵՂՉ

Livraison à domicile. Tél Taitbout 40—63

**30Rue de Trévise, Paris (9)**

**Metro: Cadet**

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Դրօշմաթուղթի սիրահարներուն կը հայթայթեմ ամէն երկրի դրօշմակներ, հին եւ նոր, լաւագոյն պայմաններով :

Նոյնպէս կը գնեմ ամէն երկրի դրօշմակներ եւ հաւաքածոներ ինչ արժէքով ալ որ ըլլան :

100 ֆր. գնումի համար Հայաստանի հանրապետութեան առաջին դրօշմակները ձրի կու տամ :

H. ANTONIAN

Librairie H. Samuel

51, Rue Mr. le Prince, Paris

ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Ա. Շահլամեան ընտանիքը 50 ֆր. կը նուիրէ Կ. Խաչի կայանի որբերուն, իր յարգելի եւ սիրելի ազգական, Պ. ԳԱՐԵԳԻՆ ՇԱՀԼԱՄԵԱՆԻ անփոխարինելի կորուստին առթիւ։

ՓԱՐԻԶԻ ՀԱՅՈՑ ԱՂՔԱՏԱԽՆԱՄ

Ընկերութիւնը Նոր Տարուայ առթիւ ուտեստի բաշխում պիտի կատարէ չքաւոր ընտանիքներուն որոնք կրնան ներկայանալ Հայոց եկեղեցին Դեկտ. 31ին, ժամը 1—6։

**Hommes** **Dames**




**15, Bld. Bonne Nouvelle**

Métro Bonne Nouvelle — Tél: Gut. 39.-70



**Tailleur de ST. BERNARD**

**Pour Hommes et Dames**

**H. GULBOLIAN**

24 rue Affre կամ 8 rue Cavé, Paris(18)

Մասնաճիւղ՝ 2 rue de la Charbonnière

մէթրօ *La Chapelle* եւ *Barbès Rochechouard*

Թելեֆոն Montmartre 69—70

ՍՏԱՑԱԾ ԵՆՔ ՖՐԱՆՍԱԿԱՆ ԵՒ ԱՆԳԼԻԱԿԱՆ ՁՄԵՌՆԱՅԻՆ ԿԵՐՊԱՍՆԵՐ։

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ.— Նոր տարիի առթիւ կը տրուի կարեւոր նուէրներ։

Մեր գիները.— Չափի վրայ, երկու փորձ, խնամուած գործ, վերարկու կամ հագուստ սկսեալ 350—450 ֆրանք, նուէր կը տրուի մուշտակէ վզնոց մը (երկու կենդանի), պատրաստուած մուշտակագործ ՀԱՅԿՈՒՀԻ ԿԻՒԼՊՕԼԵԱՆԻ արհեստանոցին մէջ. 450 ֆր. է վեր ապսպրանքներու համար, 3 փորձ, նուէր կը տրուի ֆանթէզիկամ կօշի տափատը։

Բաց է կիրակի մինչեւ կէսօր




ՐԱՔԸ ՏԻՒԶ

Զուտ խաղողէ քաշուած եւ անխառնով պատրաստուած հայկական օղին է ՐԱՔԸ ՏԻՒԶը, Զգուշացէք արուեստական օղիներէ որ ձեր ստամոքսը կ'այրէ եւ գիջութեան ջուր կը խմցնէ եւ կը վնասէ ձեր առողջութեան։ Խմեցէք միայն ՐԱՔԸ ՏԻՒԶը որուն անուշ համ, կազդուրիչ եւ ախորժաբեր ըլլալը հաստատուած է։

Dalakupeian 8 Rue Suffren

Dépôt: 7 Rue de la Paix, Marseille. Tél. Dragon 70—89.



ԱՄԵՆԱԸՆՏԻՐ ՊՈԼՍԱԿԱՆ ՔԱՇՔԱՎԱԼ ՔԻԼՕՆ 22 ՖՐԱՆՔ

ՊԱՐՍԿԱԿԱՆ ՍԱՏՐԻ ԲՐԻՆՁ, ԷՔՄԷՔ ՔԱՏԱՅՖ, ԼԻՔՕՐԻՆՈՍ, ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՄԲԱՒԱՒՈՐ ԾԻՐԱՆ ԵՒ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԱՌԱՋՆԱԿԱՐԳ ՉՈՐ ՄՐԳԵՂԷՆՆԵՐ ՆՈՐ ՏԱՐԻԻ ԵՒ ԾՆՈՒՆԴԻ ԳՆՈՒՄՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ ԴԻՄԵՑԷՔ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՒ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՆՊԱՐԵՂԷՆՆԵՐՈՒ ՃՈԽ ՄԹԵՐՔՈՎ Հ ԱՆՐԱԾԱՆՕԹ

## "ARARAT" ՄԵԾ ՆՊԱՐԱՎԱՃԱՌԱՏՈՒՆԸ

**39, Rue de Trévise, Metro: Cadet, Tél.Prov.05-91**

**Livraison rapide à domicile**

ՆՈՐ ՏԱՐԻԻ ԵՒ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ ՍՏԱՑԱԾ ԵՆՔ ԱՄԵՐԻԿԵԱՆ, ՊԱՐՍԿԱԿԱՆ, ԻՏԱԼԱԿԱՆ, ՍՈՒՐԻԱԿԱՆ ԵՒ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԱՄԵՆԱԸՆՏԻՐ ՉՈՐ ՄՐԳԵՂԷՆՆԵՐ, ԻՆՉՊԷՍ ՆԱԵՒ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՒ ԵՒՐՈՊԱԿԱՆ ԱՌԱՋՆԱԿԱՐԳ ՆՊԱՐԵՂԷՆՆԵՐ ։

# Maison HERATCHIAN

ՆՊԱՐԵՂԷՆԻ ԱՄԵՆԱՀՌՉԱԿԱՒՈՐ ՏՈՒՆԸ

**6 Rue Lamartine (Petit Journal**ի *եւեւի փողոցը*) *Փարիզ*

*մէթրօ* **Cadet,** *կամ* **Notre Dame de Lorette, Tél. Trud. 43-19**

ԿԱՂԱՆԴԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԻՐ ՅԱՐԳԵԼԻ ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐԸ, ՆԵՐԿԱՅ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԱԳՆԱՊԻ ՄԻՋՈՑԻՆ, ԻՐ ԱՊՍՊՐԱՆՔՆԵՐԸ ԿԸ ԾԱԽԷ ԱՆՄՐՑԵԼԻ ԳԻՆԵՐՈՎ։ ՀԱՄԱՁԱՅՆ ԱՄԷՆ ԳՆՈՒՄԻ ՔԱՆԱԿԻՆ՝ ՊԻՏԻ ՏՐՈՒԻ ՆՈՒԷՐ ՄԸ ։

ԴԻՄԵՑԷՔ ՀԱՄՈԶՈՒԵԼՈՒ ՀԱՄԱՐ։ ՓՈՔՐԱՔԱՆԱԿ ՎԱՃԱՌՈՒՄ՝ ՄԵԾԱՔԱՆԱԿԻ ԱՐԺԷՔՈՎ ։

ՆՈՐ ՏԱՐԻԻ ԱՌԹԻՒ, ԽԱՆՈՒԹԸ ԲԱՑ Է ԲԱՑԱՌԱԲԱՐ, ԱՅՍ ԿԻՐԱԿԻ ՄԻՆՉԵՒ ԿԷՍՕՐ։

**Livraison rapide à domicile**

---

# ՕԳՏՈՒԵՑԷՔ

ՆՈՐ ՏԱՐԻԻ ԵՒ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ ՓՈՔՐ ՇԻՇ ՄԸ ՕՂԻ ԿԱՄ ԼԻՔԷՕՌ ԿԸ ՏՐՈՒԻ 100 ՖՐԱՆՔ ԳՆՈՒՄ ԸՆՈՂՆԵՐՈՒՆ ։

ԸՆՏԻՐ ՄՐԳԵՂԷՆՆԵՐ, ԱՐԵՒԵԼԵԱՆ ԻՍԿԱԿԱՆ ՃԻՊՐԱ ԵՒ ՍԵԼԱՆԻԿ ՕՂԻ, ԱՆՈՒՇԵՂԷՆՆԵՐ ԵՒ ԱՄԷՆ ՏԵՍԱԿ ՆՊԱՐԵՂԷՆՆԵ[Ր]

**Alimentation Constantinople, 37 Rue de Trévise, Paris (9)**

**Metro: Cadet, Tél. Pro. 82-96**

**Livraison à domicile**

---

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցիի հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ 1 Յունվ. (Նոր Տարի) եւ Ս. Ծննդեան 3րդ օրը 8 Յունուար եկեղեցւոյս մէջ Ս. Պատարագի արարողութիւնները կը կատարուին եռաձայն եւ դաշնամուրով, գլուխս Երիտ. Երկսեռ Միութեան երգչախումբին կողմէ՝ ղեկավարութեամբ Պ. Վահրամ Ելմաճեանի։ Կը պատարագէ Տ. Ատոմ քհնյ. Փայլակ։*

*Կը հրաւիրուին շրջանիս ազգայինները։*

---

ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ ԱՆԻԷՌ - ԳՈՒԱՔՈԼՈՆՊԻ ՀԱՅԵՐԷՆ ԴԱՍԸՆ - ԹԱՑՔՆԵՐՈՒ ԿՐԹԱԿԱՆ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

*1 Յունուար, Կիրակի երեկոյ ժամը* 8.30*ին ընկերվարականներու սրահին մէջ,* 149 bis, Avenue d'Argenteuil, *Անիէռ։*

*Երգ, արտասանութիւն, պար եւ զանազան դպրոցական խաղեր։*

*Մուտք՝* 5 *եւ* 3 *ֆրանք*

---

# ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ՕՓԵՐԱՅԻ ԵՐԳՉՈՒՀԻ ՏԻԿԻՆ ***ԹԷՐՁԻՊԱՇԵԱՆԻ***

ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

***Տեղի պիտի ունենայ*** 1 ***Յունուար, Կիրակի կէսօրէ վերջ ժամը*** 3.30***ին***

**Salon MASSILIA***ի մէջ,* **1 Rue Roux de Brignolle,** *Մարսէյլ.*

---

## Ա. ՅՈՎԻԿԵԱՆ

Իրաւագէտ վկայեալ Փարիզի համալսարանէն

22, Rue de Maubeuge Paris (9) Metro: Cadet dt N.-D. de Lorette

*Մասնագէտ վաճառականական, քաղաքային եւ միջազգային խնդիրներու։ Պաշտպանութեան դատարաններու առջեւ։ Խմբագրութիւն պաշտօնաթուղթերու։*

*Արկածի դատեր առանց կանխավճարի։*

*Խորհրդակցութեան ժամը* 11-12 *եւ* 5 -- 7 *եւ ժամադրութեամբ։*

*Շաբաթ եւ երկուշաբթի օրերը խորհրդակցութիւն* 10 *ֆր.։*

---

## ՀԱԳՈՒՍՏԵՂԷՆԻ ԵՒ ՈՒՏԵՍՏԵՂԷՆԻ ԿԱՊՈՑՆԵՐ ՌՈՒՍԱՍՏԱՆ ՂՐԿԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*Ունինք մեծ մթերք ֆրանսական, անգլիական եւ չեխոսլովաք ճերպաներու։ Փափաքողները կրնան ղրկել իրենց գնած ապրանքները։ Ունտէրվուտ եւ Ռոյալ գրի մեքենաներ։ Կը գնենք եւ կը ծախենք օտար դրամներ։ Կը ստանձնենք ապրանքներու* embal-lage *եւ ապահովագրութիւն։ Փոխադրութիւն ամէն տեսակ ապրանքներու եւ պակածներու։*

**Դիմել՝ American Lloyd, Paris (9). 7 rue Auber**

**Tél. Opéra 67-77**

---




# "ՇԻՐԱԿ"

Արեւելքի միակ իսկական օղին է։

Անզուգական, Անմրցելի, Անփոխարինելի։

Առաջնակարգ զօրացուցիչ ախորժաբեր, պատրաստուած զուտ չամիչի հիւթով։ Հայ աւանդական սեղանին զարդ։

---

### *Բացուած է* ՐԱՖՖԻ *ճաշարանի աշնանային նուագի շրջանը*

Շաբաթ եւ Կիրակի երեկոյ ժամը 7էն մինչեւ կէս գիշեր հայ ընտիր նուագածուներ։

ՐԱՖՖԻ ճաշարանը յայտնի է բոլորին հայկական եւ եւրոպական իր հարուստ ճաշացուցակով եւ իր համբաւաւոր կովկասեան *շաշլիկով* ։

*Տէր եւ տնօրէն Մ. Գ. ՄԻՐԻՃԱՆԵԱՆ*

8 Rue de *Maubeuge*, *Paris* (9), *Metro*: Cadet, Le *Peletier* et N. D. de Lorette.

---

ԲԱՑՈՒԱԾ Է

ՀԱՅԿԱԿԱՆ ՃԱՇԱՐԱՆ

## ՀՐԱՅՐ ՍԱՍՈՒՆԻ

**3, Rue Latran, մէթրօ Maubert**

Արեւելեան եւ եւրոպական համեղ կերակուրներ։

Ամէն օր ընտիր շաշլիկ

ժամադրուեցէ՛ք **Réveillon**ի համար, **31** Դեկտ. Շաբաթ գիշեր

*Հայկական նուագ եւ պարուհիներ*

---

### *Աւշագրութիւն նոր հասցէին*

## Յ. ԱՐԹԻՆԵԱՆ

**68 Rue Julien-Lacroix, Paris (20)**

Metro Belleville — Tél. Ménil. 67—70

Ստացած ենք հայերէն եւ թուրքերէն նոր տիսքեր, երգուած նշանաւոր երգիչներէ, հին եւ նոր եղանակներով։ Ունինք նաեւ հայկական ապուխտ, երշիկ եւ ամէն տեսակ արեւելեան նպարեղէններ։

***Բաց է ամէն օր։***

---

Le Gerant : H. STEPHAN

17, Rue Damesme — PARIS (13) — Imprimerie A-DER (AGOPIAN)

---

## ԵԴՈՒԱՐԴ ԳԱԼՓԱՔՃԵԱՆ

*ԴՐԱՄԱՏՈՒՆ,* **48 rue de la République, Marseille**

**Tél. Colbert 74—51, 47—22**

Օտար դրամներու փոփոխութիւն, չէքեր կը տրուին ամէն երկրի համար։ Կը գնենք եւ կը ծախենք ոսկի դրամներ։

*ԼԱՒ ՊԱՅՄԱՆՆԵՐ*

---



## Fourrure des St. Bernard

## ՀԱՅԿՈՒՀԻ ԿԻՒԼՊՕԼԵԱՆ

*Միակ վստահելի տունը ուր պիտի գտնէք տոկուն ապրանքներ՝ զեղչեալ գիներով։ Ոչնար արժանթէններ, իրական մորթեր, փիթուաններ, սկունսներ, օձիկներ, գարքեր, վերարկուներ եւայլն։*

*Կը շինենք չափու վրայ մանթօներ՝ զանազան տեսակ մուշտակներէ, վերջին նորաձեւութիւններով ։*

*Կը ստանձնենք մուշտակներու նորոգութիւնը, ձեւափոխութիւնը, ներկելը եւ թանաժը։ Մուշտակները կը մաքրենք ձրի, կիրակի օրերը բաց է մինչեւ կէս օր ։*

24, Rue Affre *կամ* 8, Rue Cavé — PARIS - 18°

*Մասնաճիւղ՝* 2, Rue de la Charbonnière —

*Մէթրօ՝* **La Chapelle — Barbès Roch.** **Tél. Montmartre 96-70**

---




## ՌԱՔԸ ՏԻՒԶ

Զուտ խաղողէ քաշուած եւ անիսոնով պատրաստուած հայկական օղին ՌԱՔԸ ՏԻՒԶը։ Զգուշացէք արուեստական օղիներէ ձեր ստամոքսը կ'այրէ, գիշերները ջուր կը [illegible] եւ կը վնասէ ձեր առողջութեան։ Խմեցէք միայն ՌԱՔԸ ՏԻՒԶը որուն [illegible] [illegible], կազդուրիչ եւ ա[illegible] [illegible] [illegible] [illegible]ուած է։

Dalakupeian 8 Rue Suff[ren]

Dépôt: 7 Rue de la Paix, M[ars]eille. Tél. Dragon 70—89

---



---

## AGENCES: ԳՈՐԾԱԿԱԼՆԵՐ

*LYON: M. Francis COTTON, 68 Avenue Galline; à Villeurbanne, près Lyon. Téléph. Lalande 64-10.*

ԼԻՕՆ

*MARSEILLE, M. SIMONDI, 17 Allées des Primevères. à Marseille.*

ՄԱՐՍԷՅԼ

---



# ԱՄԵՆԱԸՆՏԻՐ ՊՈՒԼԿԱՐԱԿԱՆ ՔԱՇՔԱՎԱԼ ՔԻԼՕՆ 22 ՖՐԱՆՔ

ՊԱՐՍԿԱԿԱՆ ՍԱՏՐԻ ԲՐԻՆՁ, ԷՔՄԷՔ ՔԱՏԱՅՖ, ԼԻՔՕՐԻՆՈՍ, ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՄԲԱՒԱՒՈՐ ԾԻՐԱՆ ԵՒ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԱՌԱՋՆԱԿԱՐԳ ՉՈՐ ՄՐԳԵՂԷՆՆԵՐ ՆՈՐ ՏԱՐԻԻ ԵՒ ԾՆՈՒՆԴԻ ԳՆՈՒՄՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ ԴԻՄԵՑԷՔ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՒ ԵՒՐՈՊԱԿԱՆ ՆՊԱՐԵՂԷՆՆԵՐՈՒ ՃՈԽ ՄԹԵՐՔՈՎ ՀԱՆՐԱԾԱՆՕԹ

## "ARARAT" ՄԵԾ ՆՊԱՐԱՎԱՃԱՌԱՏՈՒՆԸ

**39, Rue de Trévise, Metro: Cadet, Tél. Prov. 05-91**

**Livraison rapide à domicile**